ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ՍՈՎԵՏԻՆ ԱՌԸՆԹԵՐ
ՄԱՇՏՈՑԻ ԱՆՎԱՆ ՀԻՆ ՁԵՌԱԳՐԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ—«ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ»

ԲԱՆԲԵՐ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆԻ

ԵՐԵՎԱՆ № 7 1964

ԿԱՐԱՊԵՏ ՄԵԼԻՔ-ՕՀԱՆՋԱՆՅԱՆ

# «ՎԱՐՔ ՄԱՇՏՈՑԻ» ԺԱՆՐԸ ԵՎ ՊԱՏՄԱԳՐԱԿԱՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

## 1

*Հանճարեղ Մաշտոցի ծննդյան 1600-ամյակի առթիվ կցանկանայի շատ հակիրճ լուսաբանել և արժեքավորել մեծ վարդապետի կենսագիր Կորյունի փոքրիկ երկասիրության մի քանի առանձնահատկությունները։*

*Կորյունի այդ երկասիրությունը կայուն և ընդհանրացված խորագիր չունի։ Այդ գրքույկը մերթ կոչվում է «Պատմություն», մերթ «Վարք» կամ «Յիշատակ վարուց»։*

*Հարց է առաջանում՝ ի՞նչ է գրել Կորյունը գրական ժանրի տեսակետով՝ պատմությո՞ւն, վա՞րք, թե՞ մի այլ գրական տեսակի երկ։*

*Քննությունը պարզ ցույց է տալիս, որ դա իրական-պատմական բազմազան փաստերով հագեցված հասարակական-քաղաքական կյանքի անկողմնապահ և համակողմանի շարադրանք չէ։ Այդ զգացել են նաև հնում՝ Մովսես Խորենացին և Ղազար Փարպեցին, ընդ որում վերջինս իր Պատմության մեջ վեր է հանում Սահակ Պարթևի դերը հայ գրականության սկզբնավորության մեջ, իսկ առաջինը խոստանում է հատուկ գիրք գրել Սահակի մասին։ Եվ իսկապես, Սահակ Պարթևի մասին մի հատուկ գիրք է գրված եղել դեռևս 5-րդ դարում և վերագրվել է Խոսրով Կորովի պատմագրին՝ «Պատմութիւն ս. Սահակայ Հայրապետին» (տե՛ս իմ առաջաբանը* «Корюн. Житие Маштоца» *և Աճառյանի Մատենագիտություն, էջ* LIV*)։*

*Միևնույն ժամանակ դա նաև վարքաբանություն չէ՝ նեղ իմաստով վերցրած՝ լի հրաշագործություններով, հոգու և մարմնի հրաշապատում բախումներով ու «վարքերին» հատուկ նահատակություններով։ Հետևաբար դա ժանրային տեսակետով մի ուրույն երկասիրություն է։*

*Մեր կարծիքով, դա ուրիշ ոչինչ է, եթե ոչ ներբողյան, որի կետ նպատակն է գովերգել, փառաբանել մեծ Վարդապետին ու նրա անգնահատելի հոգևոր ստեղծագործությունը։*

*Մեր տեսակետի ճշտությունն ակներև դարձնելու համար համեմատենք Կորյունի երկը «Պիտոյից գրքի» համապատասխան հատվածի հետ։ Խնդրում եմ չշփոթել այս գիրքը Մովսես Խորենացուն վերագրվող «Գիրք պիտոյից» աշխատության հետ։ «Պիտոյից գիրքը» 5-րդ դարից շատ առաջ հունահռոմեական աշխարհում տարածված* χρεία *գիրքն է, որի բովանդակությունը—օրինակները՝* ըստ ժամանակի ու միջավայրի փոխվում էին, իսկ սահմանումները անփոփոխ էին մնում: *Կորյունը հավանաբար հունարեն խմբագրությունն է աչքի առաջ ունեցել։*

*Տեսնենք, ի՞նչպես է այդ գրքի մեջ սահմանված* Ներբողեանը:

*«Ներբողեան է բան արտադրական եղելոյ բարեաց... Ներբողելի է* զդէմս, *և* զիրս, *և* զժամանակս, *և* զտեղիս...

*ա. Եւ ի գովելն պարտ և արժան է* նախաշաւիղ *առնել ըստ տեղւոյ պատճառին։*

*բ. Ապա դնել* զազգն, *և զնոյն բաժանել ի* գաւառս *և ի* նախածնողս *և ի հարս։*

*գ. Ապա* զսնունդն. *և բաժանել* յուսումն *և ի* վարժս *և* յօրէնս:

*դ. Եւ ապա զմեծ գլուխ ներբողինին դնել* զգործսն. *և զնոյն բաժանել* յանձն *և ի* մարմին *և ի* դիպուածս...

*ե. Եւ ի վերայ այսոցիկ դնել* զբաղդատութիւնն *յարադրութեամբ* ներբողեցելումն զմեծագոյնսն *ընդունել:*

*զ. Եւ ապա զ'ի վերայ բանին՝ ի* կատարման ըստ պատճառի»[1]:

*Սրանք են* Ներբողյանի *ճարտասանական կանոնները։ Պարտադիր չէ, որ ներբողողը հավասար ծավալով բոլոր կետերը գովերգի։*

*Այժմ տեսնենք, ինչպես են կիրառվել այդ կանոնները Մաշտոցի ներբողյանը կերտելիս։*

*Հորինվածքի կողմից Կորյունի այդ երկը հիմնականում համապատասխանում է «Պիտոյից գրքի» սահմանումներին։ Այդ երկու գրական հուշարձանների մեջ նկատվող տարբերությունը կամ շեղումը հեշտությամբ բացատրվում է այդ հուշարձաններում առկա նպատակադրությամբ և տեղի ու ժամանակի պայմաններով։ Կորյունն իր երկն սկսում է մի* ճակիրճ նախաբանով, *որով հայտնում է, թե ում առաջադրանքով է գրում Մաշտոցի «վարքը»։*

*Նախաբանին հաջորդում է հռետորական արվեստով առաջ քաշված մի հարց՝ «Իցէ՞ համարձակութիւն գրով նշանակել զվարս արանցն կատարելոց»։ Կորյունը դրականապես է լուծում այդ հարցը՝ հիմնավորելով իր պատասխանը Աստվածաշնչից քաղած բազմաթիվ վկայություններով, ապա հանձն է առնում գրելու այդ երկը,* «զի օրինակ և կանոն զկնի եկելոցն պաշտիցի», *կամ* «յօրինակ քաջալերիչ՝ հոգևոր ծննդոց իւրեանց, *և* որք նոքօք աշակերտելոց իցեն յազգս ազգաց»։—*Սա է, ըստ Կորյունի՝ Ներբողյանի* Նախաշավիղը:

*բ.* Ներբողյանի *հերոս Մաշտոցը ծնվել է Տարոնական գավառի Հացեկաց գյուղում, որդին է Վարդան անունով մի երևելի մարդու։*

*—Այստեղ շատ հակիրճ ի կատար է ածված* Ներբողյանի *կանոնների պահանջը. հիշատակված են՝ ծննդավայրը, գավառը, ծնողը, սակայն առանց գովքի։ Ի՞նչը պիտի Կորյունը ներբողեր՝ ծննդավա՞յրը, որ թերևս նրանով է հայտնի, որ Մաշտոցն այնտեղ է ծնվել. կամ գավա՞ռը, որ Միջնաշխարհի վաղուց փառաբանված գավառն է. կամ ծնո՞ղը, որ միայն Մաշտոցով է անվանի՞...*

*գ. Մաշտոցը մանկուց ուսանել է հունական (և ասորական) դպրությունները, այնքան առաջադիմել, որ ընդունվել է թագավորական դիվանը, «լինել սպասաւոր արքայատուր հրամանացն»... ապա «տեղեկացեալ և հմուտ եղեալ աշխարհական կարգաց, ցանկալի եղեալ զինուորական արուեստին իւ-*

[1] *Մովսէս Խորենացի, Մատենագրութիւնք, երկ. տպ., ի Վենետիկ, 1865,—«Յաղագս պիտոյից», գիրք հինգերորդ, էջ 413։*

րոյ զօրականացն»[2]։—Ինչպես տեսնում ենք, այստեղ էլ Կորյունը հետևել է «Պիտոյից գրքին»։

դ. Ապա հաջորդում է «մեծ գլուխ ներբողինին», այն է՝ ներբողվողի «գործը», բաժանելով այն «յանձն և ի մարմին և ի դիպուածս»... Ո՞րն է Մաշտոցի «գործը»—սխրագործությունը՝ ըստ Կորյունի։

1. Ճգնավորական, միայնակեցական սխրանքները՝ «մերկանայր այնուհետև զիշխանականն ցանկութիւնսն, և առեալ զխաչն պարծանաց՝ եկանէր զհետ ամենակեցոյց խաչելոյն։ Բազում և ազգի ազգի վշտակեցութիւն... կրէր... զանձն տուեալ՝ միայնաւորութեան, լեռնակեցութեան, քաղցի և ծարաւոյ և բանջարաճաշակութեան, արգելանաց անլուսից, խարազնազգեստ և գետնատարած անկողնոց։ Եւ բազում անգամ զհեշտական հանգիստ գիշերոյն և զհարկ քնոյ յոտնաւոր տքնութեան ի թօթափել ական վճարէր»... Եվ այդ ամենով Մաշտոցը «պայծառացեալ՝ ծանօթական և հաճոյ լինէր աստուծոյ և մարդկան»[3]։

2. «Աւետարանական արուեստն»—ավետարանի քարոզչությունը։

3. Մաշտոցի ուշ ու միտքը ժողովրդի բարօրությունն է, նրա լուսավորությունը՝ «Եւ այնպէս տրտմական հոգովք պաշարեալ և թակարդապատեալ և անկեալ ի ծուփս խորհրդոց, թէ որպիսի արդեօք ելս իրացն գտանիցէ»[4]։

4. Բոլոր ճիգերի ու մտորումների պսակը գրերի գյուտն է և լուսավորությունը հայերի, վրացիների և աղվանների։

Ինչպես տեսնում ենք, այստեղ էլ լիովին կիրառված են «Պիտոյից»-ի սահմանած կանոնները ներբողյանի համար։

ե. ...«ընել զբաղդատութիւնն յարադրութեամբ ներբողեցելումն զմեծագոյնսն ընդունել»։—Այստեղ Կորյունը Մաշտոցին բաղդատում է հռչակավոր Մովսես մարգարեի հետ և գերազանցությունը տալիս է հայ Վարդապետին։ Նա զգում է, որ իրեն կմեղադրեն այդպիսի բաղդատության համար, այնուամենայնիվ նա հանդգնում է նման համեմատություն անել, «քանզի և չկայ ինչ ի վերայ յայտնեօք և ծածկականօք զաստուածականն խօսել, քանզի միոյն աստուծոյ ամենազօրի շնորհք առ ամենայն ազգս երկրածնաց մատակարարին»[5]։

զ. Կրկին գովաբանություն Վարդապետի, որով ավարտում է ներբողյանը։

Կորյունը նկարագրում է Մաշտոցի կյանքի վերջին պահերը և մահը. «սքանչելի խաչանման լուսաւոր շողաւոր ձև երևէր ի վերայ ապարանիցն, յորում երանելին վախճանէր»։

Մաշտոցի աճյունը Նոր-քաղաքից (Էջմիածնից) Օշական են հուղարկավորում մեծ բազմությամբ «և այնու խաչանշան լուսաւոր յառաջխաղաց նշանաւն», իսկ երբ ամփոփում են աճյունը «նշանն աներևույթ լինէր»։

Ահա թե ինչպիսի պաթեոսով է ավարտում Կորյունը իր Վարդապետի ներբողյանը։

Եզրակացություն։

Մաշտոցի «Վարքը» թե իր կառուցվածքով և թե հորինման կանոնների գծով միանգամայն համապատասխանում է ներբողյանի սահմանումներին ըստ

---

2 Կորյուն, Վարք Մաշտոցի, Երևան, 1941, էջ 36։

3 Անդ, էջ 38։

4 Անդ, էջ 52։

5 Անդ, էջ 92—94։

«Պիտոյից»-ի։ Մաշտոցի «Պատմությունը» ժանրային տեսագծով ներբողյանի թերևս լավագույն նմուշն է հայ հին գրականության մեջ։ Հետագայում ներբողյանը շատ ավելի է զարգանում՝ հասնելով իր կլասիկ շրջանին XIII—XIV դդ.։

## 2

Կորյունի երկի ժանրային պատկանելությունը պարզելուց հետո՝ այստեղ կցանկանայինք հակիրճ բնութագրել նաև այդ գրական հուշարձանի գրական-գեղարվեստական ու պատմագիտական արժեքը։

Եթե քննության առարկա հուշարձանը ներբողյան է, ապա ուրեմն դա պետք է նաև գրական-գեղարվեստական արժեք ունենա։ Հեղինակը պարզ գիտակցել է իր երկի բնույթը, ուստի և չի զլացել հնարավոր ստեղծագործական միջոցներով և հնարանքներով «ծաղկեցուցանել» իր պատմվածքը և արտահայտիչ ու առինքնող դարձնել մեծ Մաշտոցի կերպարը։

Երկի գրական-գեղարվեստական արժեքավորման տեսակետից առաջնակարգ նշանակություն ունեն հեղինակի լեզվի, ոճի, պատկերավոր արտահայտության առանձնահատկությունները ու արժանիքները: Շատ հակիրճ անդրադառնանք նաև այդ հարցին։

Բանասերներից ոմանք ըստ ամենայնի դրական գնահատական են տվել Կորյունի լեզվին, օրինակ՝ «Հայկազյան բառարանի» մեծավաստակ հեղինակները գրում են՝ «ոճն է բուն և հարազատ հայկաբանութիւն, ուրեք պարզ և ուրեք վսեմ, այլ համառօտաբանութիւնն բերէ զմթութիւն»։ Ոմանք էլ ընդհակառակն բացասական գնահատական են տալիս, օրինակ՝ Ն. Ադոնցը բնութագրում է այսպես. «արհեստական և շինծու ոճ է, ճապաղ և ծանր, որպես ճռնչող սայլ, և չունի մյուս ժամանակակիցների ոճի ճեմական թեթև և սահուն նազանքը»[6]։ Բանասերների մեծ մասը տատանվում է այս երկու հիմնական իրարամերժ տեսակետների մեջ։ Մեր կարծիքով Կորյունի լեզվի բազմակողմանի փոքր ինչ խանդավառ բնութագրությունը պատկանում է Նորայր Բյուզանդացուն։ «Ճոռոմ, պերճ, վսեմ... Ի՜նչ հորդություն քաջահնչյուն բառերու. որպիսի՜ ճախարակյալ պարբերությունք (գղ. période). ո՜րքան զարդք, ո՜րչափ ձևք և պեսպիսությունն ասացվածոց. ի՜նչպես ձայնդ կը հանդչի հավարտ մեն մի նախադասության՝ որպես թե ողորկ ոտանավոր մի կարգայիր. միանգամայն յուր պաճուճական առատության հետ՝ ինչպես լավ գիտե դերբայներով հատու և սեղմ դարձված տալ յուր գաղափարաց արտահայտության, և որչափ մեծ արվեստիվ կը զուգե մատենագրական բարձր լեզվին հատուկ ձևոց և շարվածոց՝ ընտանեկան խոսից ձևեր և շարվածներ»[7]։ Ապա իր միտքը դյուրըմբռնելի դարձնելու համար նա Կորյունի լեզուն համեմատում է իր սերնդակից Եզնիկի բառ ու ոճի հետ. «Եզնիկ և Կորյուն ոչ միայն ժամանակակիցք են, այլ և սննդակիցք և ուսումնակիցք, բայց ոճով կզանազանին մեծապես։ Զարդագիր են և երկոքին, այսու տարբերությամբ, որ Եզնիկ ոչ երբեք կ՚ախորժի սեթևեթել՝ տուժելով զհստակություն (գղ. clarté), մինչդեռ Կորյուն զարդերն կ՚աղոտացնեն հաճախ զմիտս բանին։ Առաջինն՝ ի սկզբանե ցկատարած

---

6 «Հանդես Ամսօր.», 1927, էջ 400։

7 Նորայր Բյուզանդացի, Կորյուն վարդապետ և նորին թարգմանությունք, Տփղիս, 1909, էջ 10։

յուր գրության՝ կնմանի հեզասահ վտակի, որո ականակիտ ջրերում մեջեն պայծառապես կտեսնենք զհատակն. իսկ երկրորդն՝ շատ անգամ կարծես ուղխ մի է, որ կհոսի ծածկյալ ծաղկներով, և այս պատճառով աչք մեր չկարեն թափանցիկ լինել ընդ խորությունն։ Առ Եղնկա միշտ կանոնավոր է քերականությունն... Ի վերջակիտե ի վերջակետ՝ բայ, գոյական, վերադիր, ձև, դարձված, ամենայն ինչ վճիտ է իբրև զվանակն (գղ. cristal)։ Այսորիկ աղագավ անաշխատ կհասկանանք զյուր գիրսն, և դյուրավ կարող ենք թարգմանել համենայն արևմտյան բարբառս։ Իսկ առ Կորյուն չեն պակասիր ասացվածք, որ շփլյան կամ անկանոն կամ տարտամ (գղ. vague), բացատրություք և բարդություք, զորո անհնար է նույն իսկ աշխարհաբար հայերենի դարձնել, թող թե օտար լեզվի»[8]։

Եվ իսկապես Կորյունը «ծաղկեցնում է» Մաշտոցի մասին գրելիքը ոչ միայն «քաջահնչյուն բառերով», «ճախարակյալ պարբերություններով» զարդ ու պաճուճանքով, այլ և բանաստեղծական համեմատություններով ու հակադրություններով, պատկերներով ու մակդիրներով, հիպերբոլաներով և մետաֆորաներով (փոխաբերություններով) և այլն։ Բերենք մի երկու օրինակ. «ուղղագոյնս նաւիցեմք զհամատարած ալեօքն վարդապետական ծովուն», կամ «ի վերայ համատարած լեռնացելոյ աստուածապատիժ ծովուն», «անցաւոր ժամանակօքս մատենապատում երկնաբերձ պայծառացուցեալ», կամ «նշանագիրքն իսկ յայլոց դպրութեանց թաղեալք և յարուցեալք դիպեցան» կամ՝ «որոց և ինքեանք իսկ (խոսքը աշակերտության մասին է) ի կողմանց և ի գաւառաց Հայաստան աշխարհին յորդեալք և դրդեալք՝ հասանէին ի բացեալ աղբիւրն գիտութեանն»...

Կորյունն ունի կենդանի և հուզական նկարագրություններ՝ գրված պատկերավոր, սահուն ու անկաշկանդ։ Բերենք մի երկու օրինակ.

«Յայնմ ժամանակի երանելի և ցանկալի աշխարհն Հայոց անպայման սքանչելի լինէր. յորում յանկարծ ուրեմն օրէնսուսոյց Մովսէս՝ մարգարէական դասուն, և յառաջադէմն Պաւղոս՝ բովանդակ առաքելական գնդով, հանդերձ աշխարհակեցոյց աւետարանաւն Քրիստոսի, միանգամայն եկեալ հասեալ ի ձեռն երկուց հաւասարելոցն՝ հայաբարբառք հայերէնախօսք գտան։

Անդ էր այնուհետև սրտալիր ուրախութիւն և ակնավայել տեսիլ հայելւոյն...»[9] և այլն։

Ասես, զորահանդեսի կենդանի ու շարժուն (դինամիկ) նկարագրություն լինի, մինչդեռ Կորյունն ուզում է մի պարզ միտք ասել, թե Հին ու Նոր կտակարանները լիակատար թարգմանվել են հայերեն։

Բերենք ևս մի օրինակ...

«Եւ ոչ այնպէս մեծն Մովսէս զուարճանայր յէջս Սինէական լերինն. չասեմք, թէ առաւելօքն՝ պակասագոյն։ Քանզի յաստուծոյ առեալ և աստուածագիր հրաման ի բաղուկս այրն աստուածատես ի լեռնէն իջանէր. այլ վասն վրէժագործ մոլովրդեանն, որոց թիկունք ի տէրունիսն և կործան յերկիր, տրտմագրումք յիւրեանց կուսս ձուլածուին երկիր պագանէին, և զնորին հրամանարերն սրտառուչ սրտաբեկ լացուցին քանզի ի տախտակացն խորտակելոց յայտնի եղեալ տեսանէր բերելւոյն թախծութիւնն։ Իսկ այսր երանելւոյ (իմա

8 Ներսէս Բյուզանդացի, անդ, էջ 111։

9 Կորյուն, Վարք, էջ 56։

Մաշտոցի), վասն որոյ ճառեալքս յարդարին, ոչ ըստ այնմ օրինակի, որ անդն գործեցան, այլ ինքն իւրով լցեալ հոգևոր մխիթարութեամբ՝ կարծեցեալ զընդունելեացն յօժարութիւն...»[10]։

Այսպիսի նկարագրություններ շատ կան Կորյունի փոքրիկ երկի մեջ։

Մեր հակիրճ բնութագրությունն անգամ ակնհայտ է դարձնում այն, որ դեռևս հայ գրականության ակունքի շրջանում մաշտոցյան սանների շարքում եղանդուն գործել է բանաստեղծական ավյունով ու ձիրքով օժտված մի մտահարուստ և վառ երևակայություն ունեցող պերճաբան գրող։

3

Դառնանք այժմ մեր հուշարձանի պատմագիտական-աղբյուրագիտական արժեքին։

Մեր բանասիրության մեջ Կորյունի երկը հաճախ է քննության առնվել հենց այս տեսանկյունով։ Կարծիքները խիստ տարբեր են եղել։ Բանասերներից ոմանք՝ թերագնահատելով այդ հուշարձանի պատմագիտական-աղբյուրագիտական նշանակությունը, վեր. են հանում նրա պատմագրական արժեքը[11]. մյուսները՝ ընդունելով անգամ այդ երկի մեջ հիշատակված պատմական տեղեկությունների պակասավորությունը, այնուամենայնիվ գտնում են, որ նրա հեղինակը «միակ վստահելի պատմիչն է 384—444, վաթսուն տարվանս»[12]։

Մ. Աբեղյանը՝ հիմնականում կողմնակից լինելով Գ. Ֆնտգլյանի կարծիքին, միանգամայն ուրույն կերպով է հիմնավորում իր տեսակետը Կորյունի երկի արժեքի մասին։ «Այս տիպի որևէ գրվածք գնահատելիս՝ ամենից առաջ պետք է նկատի ունենալ հեղինակի ծրագիրը, այսինքն՝ թե ինչ է ուզեցել գրել, և գրելու ժամանակը, դարը։ Կորյունը հենց սկզբից հայտնում է, թե ինքը մտածել է գրել հայկական «գրի մասին, թե երբ և որ ժամանակ բաշխվեց և ինչպիսի մարդու ձեռով տրվեց այդ աստվածային նոր շնորհքը»... «Նա շատ լավ գործադրել է այն, ինչ որ ծրագրել է»—եզրակացնում է Մ. Աբեղյանը։ Ելնելով այս դրույթից՝ նա տրամաբանորեն և հիմնավորված հերքում է Նորայր Բյուզանդացու և այլոց առարկությունները Կորյունի երկի պատմագիտական արժեքի դեմ։ Նրա կարծիքով այդ երկը «հայ պատմական կյանքի նոր դարաշրջանի սկզբնավորության հետ ծանոթանալու նկատմամբ՝ ունեցել է և ունի շատ մեծ արժեք։ Բավական է միայն ասել, որ եթե չլիներ այդ գրքույկը. մենք չափազանց քիչ քան, այն էլ կասկածելի, կիմանայինք այնպիսի կարևոր եղելության մասին, ինչպիսին է հայ գրի ու գրականության սկզբնավորությունը»[13]։

Հարկ չկա այս հոդվածի մեջ մանրամասն խոսել բանասերների արտահայտած զանազան կարծիքների մասին և բանավիճել նրանց հետ։ Կցանկանայի միայն շատ հակիրճ նշել այդ հուշարձանի պատմագիտական արժեքն ու նշանակությունը։ Դրանք են՝

---

10 Կորիւն, անդ, էջ 52։

11 Նորայր Բյուզանդացի, անդ, էջ 7—8։

12 Գառնիկ Ֆնտգլյան, անդ, ներածութ., էջ ԻԵ—ԻԶ։

13 Մ. Աբեղյան, Կորյուն, Վարք Մաշտոցի, էջ 16 և «Հայոց հին գրականության պատմություն», գիրք առաջին, էջ 155—156։

1. Կորյունը ականատես վկայող է։ Նա բավականաչափ առարկայորեն նկարագրում է հասարակական գործչի իրական-պատմական սխրագործությունը։ Հուշարձանի մեջ տեղ չունի «հրաշքը», գերբնական հրաշագործությունը, վարքագրության այդ անկապտելի տարրը։ Մեր աչքի առաջ գործում է իրական մարդը և նրա գործերը նույնպես իրական են։

2. Ըստ Կորյունի՝ Մաշտոցը կատարում է իր «սխրագործությունը» ոչ թե «միմնամարտելով բանակայի կամ սատանայի հետ ի փառս հավատի», այլ ստեղծում է, ի կատար ածում իր մեծ գործը բարեկամների, աշխատակիցների, աշակերտների և հովանավորող անձերի օժանդակությամբ, ընդ որում մի առ մի հիշատակված են աշխատակիցները և նրանց ազգային պատկանելությունը (հայ, վրացի, աղվան, ասորի և հույն)։

3. Գրերի հեղինակը սրբապսակով զարդարված «սուրբ», «ճգնավոր» չէ, որ հույսը դնում է միայն «աստծո շնորհի» վրա, այլ իրական պետական-հասարակական գործիչ, որը պարզ գիտակցում է գրի ու գրականության նշանակությունը ժողովրդի լուսավորության գործում և որը անդադրում աշխատում է իր կետ նպատակին հասնելու. հենց դրա համար էլ նա գնում է ավելի կուլտուրական երկրներ, օգնություն է փնտրում, իսկ երբ ստանում է որոնածը, սիրով բաժին է հանում բոլոր նրանց, որ նրա կարիքն է զգում։

4. Կորյունի երկի մեջ պարզ գիտակցված է գիր ու գրականության մեծ դերը ժողովրդին համախմբելու գործում. «Եւ արդ գնաա, որ յայնչափ ի մասնաւոր և ի բաժանեալ լեզուացն ժողովեցան, միով աստուածարարբառ պատգամօքն մի ազգ կապեալ՝ փառաբանիչք միոյ աստուծոյ յօրինէր»[14]։ Տարակույս չկա, որ այս հիմնական միտքը Կորյունը ժառանգել է մեծ Վարդապետից։

5. Հայ պատմագրության մեջ միայն Կորյունի երկասիրության մեջ են թվարկված Հայաստանի, Վրաստանի և Աղվանքի պետական, հասարակական ու եկեղեցական գործիչները, որոնք մեծապես օգնել են Մաշտոցին վիթխարի գործունեություն ծավալելու ժողովրդի լուսավորության բնագավառում։ Այստեղ են թվարկված նաև հույն և ասորի պետական և հասարակական գործիչները։ Մ. Խորենացին և մյուս պատմագիրները Կորյունից են քաղում իրենց տեղեկությունները։

Կորյունի գրքի մեջ հիշատակված բոլոր գործիչները ժամանակակիցներ են, միևնույն սերնդի ներկայացուցիչներ և բոլորն էլ այս կամ այն ձևով նպաստել են հայ, վրաց և աղվան գիր ու գրականության սկզբնավորությանը։

6. Կորյունը պահպանել է արժեքավոր տեղեկություններ բարբարիանոս աղանդի ու նրա ճնշման, ինչպես նաև այլ եկեղեցական իրադարձությունների մասին։

7. Ոչ մի հայ մատենագիր այնքան մանրամասն, հետևողական և վավերական չի պատմում հայ, վրաց և աղվան հարևան ժողովուրդների գիր ու գրականության սկզբնավորության և կատարած թարգմանությունների մասին, որքան այդ անում է Կորյունն իր փոքրածավալ գրքույկով։

Կարելի է շատ բան պահանջել մի ականատես հեղինակից, բայց անպայման պետք է հաշվի առնել այն, ինչպես արդարացի նշում է Մ. Աբեղյանը, թե ինչ է նպատակադրվել գրելու ինքը հեղինակը։ Կորյունը նպատակ չի

14 Կորյուն, անդ, էջ 64։

ունեցել գրելու ընդարձակ պատմություն, այլ միայն կարևորագույնը, ինչպես ասում է ինքը. «Ոչ ստուգապատում ճարտարախօս եղեալ առ ի մերոց բանից զհօրէն իմոյ կարգեցաք, այլ զյաճախագոյնն թողեալ... զհամառօտս կարգեցաք, որ ոչ միայն մեզ, այլ և որ զմատեանս ընթեռնուն՝ յայտնի է», կամ «անցեալ զրազմախուռն արգասեօք սրբոցն՝ առ ի մանրակրկիտ առնելոյ զկարևորագոյնս պատմելոյ զհանգամանս»[15]:

Կորյունը կատարել է այն, ինչ ծրագրած է եղել, և լավ է կատարել։

8. Սահակ Պարթևի մահվան տարին, ամիսը, օրը և ժամը (439 թ. սեպտեմբերի 7, հինգշաբթի ժ. 2-ին,—այդ օրը նրա ծննդյան օրն է), իսկ Մաշտոցինը՝ տարին, ամիսը և օրը (440 թ. փետրվարի 17, շաբաթ), հաղորդված են այնպիսի ճշտությամբ, որ դրանք կարող են ելակետային թվական հանդիսանալ V դարի առաջին կեսի հայ հասարակական կյանքի մի շարք կարևորագույն իրադարձությունների թվականները ճշգրտելու գծով:

9. Կորյունի երկը անժխտելի նշանակություն ունի նաև հայ հին գրականության պատմության համար, որպես մի պատմագրական երկասիրություն, որն ունի սերտ, բայց մինչև օրս ոչ լրիվ պարզաբանված կապեր V դարի մի շարք կարևորագույն գրական հուշարձանների հետ, ինչպես նաև հայոց գրական լեզվի պատմության համար, որպես նույն դարաշրջանի սակավաթիվ ինքնուրույն գրական հուշարձաններից մեկը:

10. Ժամանակագրության գծով Կորյունի երկը փոքր ինչ կաղում է։ Այդ հանգամանքը կարելի է բացատրել երեք հիմնական պատճառներով.

Նախ՝ այդ երկի ժանրային բնույթով. Կորյունը ոչ թե պատմագրական երկ է գրել, այլ ներբողյան, գովաբանական մի ճառ, որի մեջ գերիշխող պիտի հանդիսանա հերոսի ներքին բարեմասնությունների դրսևորումը և նրա սխրագործության մեծությունը.

Երկրորդ՝ Կորյունն իր դարի զավակն է. հայտնի է, որ V դարի առաջին կեսի հայ պատմագիրները այնքան էլ «բարեկամ», «համերաշխ» չէին ժամանակագրության հետ։ Ինչպես Բուզանդի և Ագաթանգեղոսի երկերում, այնպես էլ Կորյունի մոտ սովորական են հետևյալ «ժամանակագրական ֆորմուլաները»՝ «և յետ այնորիկ», «ապա յետ այնորիկ», «այնուհետև», «աւուրս բազումս», «յայնժամ», «յայնմ ժամանակի», «առ որով ժամանակաւ», «զարձեալ յետ ժամանակի ինչ ընդ մէջ անցելոյ» և այլն։

Երրորդ՝ Կորյունի երկի մեջ կան մի քանի ժամանակագրական տվյալներ, սակայն դրանց մի մասն էլ խանգարված է ու եղծված և անհրաժեշտ է ճշգրտել ձեռագրերի մանրակրկիտ բաղդատությամբ:

Չնայած վերոհիշյալին՝ երկի ԻԹ հատվածում՝ ըստ Մ. Աբեղյանի բաժանման՝ առկա է Մաշտոցի կյանքի ու գործունեության «համար ամաց»-ը, որով հնարավոր է ճշտել V դարի առաջին կեսի պատմական իրադարձությունների թվականներից մի քանիսը, օրինակ՝ Մաշտոցի կրոնավորության, հայ գրերի գյուտի ու գրականության սկզբնավորության, ինչպես նաև Սահակի ու Մաշտոցի մահվան տարեթվերը:

11. Մեծ է Կորյունի ծավալով փոքր այդ երկասիրության արժեքը։ «Յառաջիմաց» հեղինակը պարզ գիտակցում էր, թե ինչ կարևոր դեր է վերապահված այդ գրքույկին, որը կյանքի է կոչված «յօրինակ քաջալերիչ՝ հոգևոր ծննդոց

---

15 Կորյուն, անդ, էջ 98։

*իւրեանց, և որք նորօք աշակերտելոց իցեն յազգս ազգաց» (ԻԸ)։ Այդ եզրակացությանն էր հանգել նա՝ տեսնելով աննախադեպ այն ձգողական ուժը, որով տոգորված էր Մաշտոցը, որպես հարազատ ժողովրդի մեծ Վարդապետը, և որը տարերայնորեն դեպ իրեն էր քաշում աշակերտողների հոծ խմբեր՝ «որոց և ինքեանք իսկ (իմա՝ աշակերտները) ի կողմանց և ի գաւառաց Հայաստան աշխարհին՝ յորդեալք և դրդեալք հասանէին ի բացեալ աղբիւրն գիտութեան...» (ԺԲ)։ Մեր այսօրվա տերմինաբանությամբ ասած՝ դա մի կատարյալ մասսայական շարժում էր դեպի մեսրոպյան դպրոցը, դեպի գիր ու գրականությունը։*

*Ահա մաշտոցյան այս դպրոցում մեծ Վարդապետի և նրա աշակերտների միջոցով կոփվել, հղկվել ու մարզվել են այն մարտիկները, որոնք գրչով ու խոսքով, սեփական կյանքով ու կրծքով դարեր շարունակ պաշտպանում էին և պաշտպանել են հարազատ ժողովրդի անկախությունը, նրա ազգային մշակույթի ինքնուրույնությունն ընդդեմ ամեն տեսակի զավթիչների։*

*«Մի ժողովուրդ,—ասում է իմ սիրելի ուսուցիչ, հռչակավոր հայագետ-հայասեր պրոֆ. դ-ր Յոզեֆ Մարկվարտը—Հովսեփ Բդեշխը, ինչպես սիրում էր մեկ-մեկ գրել հարգելի գիտնականը,—որն իր ծոցից ծնել է այդպիսի մարդիկ և պաշտում է նրանց, որպես իր հերոսների, քանի դեռ նա հետևում է նրանց օրինակին, չի կարող երբեք բնաջնջվել, որքան էլ թուրքերը, քրդերը, թաթարները, պարսիկները և բոլոր մեծ տերությունները հակառակ լինեն նրան»*[16]։

К. А. МЕЛИК-ОГАНДЖАНЯН

## ЖАНРОВЫЕ ОСОБЕННОСТИ И ИСТОРИКО-ЛИТЕРАТУРНОЕ ЗНАЧЕНИЕ «ЖИТИЯ МАШТОЦА» КОРЮНА

### (Резюме)

Автор статьи задался целью уточнить жанр этого литературного памятника, а также дать объективную оценку его в историко-литературном и историографическом аспектах.

Как известно, этот литературный памятник не имеет исстари установленного заглавия: в одних списках он называется «Историей» (*«Պատմութիւն»*), в других—«Житием» (*«Վարք»* или *«Յիշատակ վարուց»*).

Детальное исследование памятника показало, что это произведение не является всесторонним, объективным повествованием о жизни и деятельности Маштоца. Это обстоятельство обратило на себя внимание еще Мовсеса Хоренаци и Лазара Парбеци (V в.). Хоренаци полагает, что в нем роль Саака Партева умалена, а потому обещает написать специальный труд о нем, а Парбеци, сжато излагая содержание труда

[16] *Prof. Jos. Marquart.* Über den Ursprung des armenischen Alphabets in Verbindung mit der Biographie des heiligen Mašt'oc', Wien, 1917, *էջ 7—8։*

Корюна, уделяет особое внимание деятельности Саака, представляя его организатором и руководителем всей просветительской деятельности Маштоца и его учеников. Это же обстоятельство побудило Хосрова (V в.) написать специальный, ныне утраченный труд—«История Саака Партева».

Произведение Корюна не принадлежит также к житийному жанру, в котором ярко изображены были бы чудеса, борьба героя с демонами, бесами и т. д.

Автору статьи кажется, что изучаемое произведение относится к жанру панегирика, похвального слова, в котором превозносится деятельность любимого учителя, воздается ему высшая хвала. В этих целях Корюн руководствуется весьма распространенной в греко-римском мире (IV—V вв.) книгой канонов—«Книгой Хрий», переведенной еще в V в. на армянский язык.

В «Книге Хрий» для составления панегирика, похвального слова, соблюдается шесть основных канонов с детализацией каждого канона на более мелкие пункты. Труд Корюна до мельчайших подробностей соответствует всем требованиям «Книги Хрий», правила которого он применяет в своем похвальном слове о Маштоце. Труд Корюна первый по времени панегирик в древнеармянской оригинальной литературе.

Во второй части статьи автор сжато характеризует литературно-художественную и историографическую ценность этого памятника. Здесь подвергнуты детальному анализу стиль Корюна, красочное описание разных эпизодов из жизни Маштоца, подлинность повествуемых им историко-культурных событий. Как повествователь, он правдив, ибо, будучи любимым учеником великого Маштоца, был неотлучным очевидцем, участником всей деятельности гениального просветителя на благо братских народов армян, иберов и агван.

Не ускользнули от внимания автора статьи и погрешности труда Корюна, как-то: описательная форма определения времени того или иного события («вслед за тем», «засим», «в то время» и т. д.) вместо точной хронологии, искажение некоторых хронологических дат, имеющихся в труде, наконец, высокопарность стиля.

K. A. MELIK-OHANDJANIAN

## DES PARTICULARITES DE GENRE ET DE LA VALEUR HISTORICO-LITTERAIRE ET HISTORIOGRAPHIQUE DE LA „VIE DE MACHTOTZ“ DE KORIUN

L'auteur de l'article se pose pour tâche de déterminer le genre de ce monument littéraire qu'il veut apprécier à sa juste valeur historico-littéraire et historiographique.

Cet ouvrage, comme on le sait, n'a jamais porté de titre bien défini: on rencontre, dans certains catalogues, „Histoire“ *(«Պատմութիւն»)* ou encore „Vie“ *(«Վարք»* ou *«Յիշատակ վարուց»)*.

Une étude approfondie montre que cet ouvrage n'est point une relation complète et objective de la vie et de l'activité de Machtotz. Ce fait avait attiré l'attention de Moïse de Khorène et de Lazare de Pharbe (V$^{e}$ siècle). D'après Moïse de Khorène, le rôle de Sahak Parthev s'y trouve amoindri, ce qui lui fait promettre de consacrer un ouvrage à son intention. Quant à Lazare de Pharbe, tout en donnant un résumé de l'ouvrage de Koriun, il accorde une attention spéciale à l'activité de Sahak qu'il présente comme le chef et l'organisateur de toute l'oeuvre culturelle de Machtotz et de ses élèves. Cette circonstance avait incité Khosrov (V$^{e}$ siècle) à composer son „Histoire de Sahak Parthev", ouvrage aujourd'hui disparu.

L'ouvrage de Koriun n'appartient pas plus au genre hagiographique, où ne manqueraient point miracles et combats de héros contre diables et démons, etc.

L'auteur de l'article pense être en présence d'un ouvrage qu'il faut rapporter au genre panégyrique, exaltant l'oeuvre du maître respecté et le comblant de louanges. Dans ce même but, Koriun s'inspire du „Livre des Chries", livre canonique traduit en arménien dès le V$^{e}$ siècle et très répandu dans le monde gréco-romain aux IV$^{e}$ et V$^{e}$ siècles.

Le „Livre des Chries" indique six canons majeurs, composés de nombreux points, à suivre dans la rédaction des panégyriques. L'ouvrage de Koriun qui répond aux exigences du „Livre des Chries" jusqu'aux moindres détails, est par ordre de date, le premier panégyrique dans la littérature arménienne originale ancienne.

L'auteur traite, dans le second chapitre de l'article, de la valeur littéraire, artistique et historiographique de l'ouvrage examiné. Le style de Koriun, tout comme la vivante relation des différentes étapes de la vie de Machtotz, y est soumis à une analyse des plus détailiées. Quant à la véracité des évènements historiques et culturels reproduits chez Koriun, ce dernier, élève choyé du grand Machtotz, témoin oculaire invariablement présent, apportant sa part de contribution à l'oeuvre du génial illuminateur des peuples arménien, ibérien et aghovan frères, en tant que narrateur est véridique.

Les défauts de l'ouvrage de Koriun n'ont point échappé à l'attention de l'auteur de l'article, comme, par exemple, la manière de situer dans le temps tel ou tel évènement („après quoi", „ensuite", „à cette époque" etc.) qui ne saurait remplacer une chronologie exacte, ou l'altération de certaines dates ou encore le ton emphatique.